No.1 *Հրատարակութիւն Հնչակեան կուս. Ամերիկայի Գ. Ցանձնախմբի*

ՍՕՕ

# ՀԱՐՍԸ

## (ՊԱՏԿԵՐ ԻՐԱԿԱՆ ԿԵԱՆՔԻՑ)

*Արտատպուած "Նոր Երիտասարդ Հայաստան"էն*

ԳԻՆԸ 10 ՍԷՆՏ

ՏՊԱՐԱՆ
"ԵՐԻՏԱՍԱՐԴ ՀԱՅԱՍՏԱՆԻ"

ՆԻՒ—ԵՈՐՔ

1907

Ի նկատի ունենալով ա՛յն, որ առհասարակ մեր մէջ բաւական զգալի է ժողովրդական ընթերցանութեան համար այլ և այլ գրքերու բացակայութիւնը, Հնչակեան Կուսակցութեան Ամերիկայի Գործադիր Ցանձնախումբը որոշած է հրատարակել մի շարք վիպական, բանաստեղծական, պատմական-յեղափոխական և հասարակական դիտութեան նուիրուած գրքոյկներ, որոնք իրենց մատչելի գներով կարողանային տարածուիլ ժողովրդի լայն խաւերուն մէջ։

Եւ ահա՛, ներկայիս ի լոյս կընծայենք առաջին գըրքոյկը ընկեր Աւօյի «ՀԱՒՍԷՆ»։

ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ
ԱՄԵՐԻԿԱՅԻ Գ. ՑԱՆՁՆԱԽՈՒՄԲ

1 Փետրուար 1907
ՆԻՒ—ԵՕՐՔ

# ՀՈՒՍԷ

Մէկ տարի ամբողջ Սասունցիք կռւի մէջ էին։ Մէկ օր Տալւորիկն էր կռւողը, միւս օրը Կէլիէկուզան, երրորդ օրը Շէնիք և այսպէս շարունակաբար. սովորական, առօրեայ աշխատանքների պէս, կռիւ, արշաւանքներն էլ միշտական զբաղմունք էին դարձել։ 1893 Թւականից մինչեւ 1894-ը այս պատերազմ-ճակատամարտները, Սասունը պահել էին լարւած, անհանգիստ և անընդհատ դրութեան մէջ։ Օսմանցին տեսնելով որ մասնակի արշաւանքները, հրամակային յարձակումները անզօր են ըմբոստ Սասունը խոնարհեցնելու, վճռել էր իր զինւորական բոլոր ույժը այդտեղ Թափել ու ճնշել խրոխտ լեռների քաջազուն զաւակներին։ Այս բանի համար մի գունդ զօրքերի հետ վարպետներ ուղարկեց Սասուն, որ նորոգեն և ամրացնեն Սասունի կամուրջը։

Դրութեան օրհասական լինելը այս անգամ լաւ ըմբռնեցին Սասունցիք։ Գիտակցելով գալիքի ահաւորութիւնը, նրանք վճռեցին համայնական խորհուրդ կազմել, խնդիրը, անելիքը ամենալուրջ և բազմակողմանի կերպով քննելուց յետոյ, կայացնել վերջնական վճիռ և այդ վճիռը իրագործելու համար մինչեւ վերջին շունչ ու վերջին Սասունցին կռիւ մղել։

Ժողովներ տեղի ունեցան Տալւորիկ և Կէլիէկուզան գիւղերում, մասնակցութեամբ բոլոր գիւղերից եկած պատգամաւորների, քահանաների, նշանաւոր ռազմիկ կանանց և աղամարդերի. այս ժողովների հոգին, ղեկավարը ՄՈՒՐԱՏՆ էր, Սասունցիներից սիրւած ու յարգւած յեղափոխական անձնւէր գործիչը։

Ընդհանուր խորհրդակցութիւններ վերջանալուց մի քանի օր յետոյ Սասունի կամուրջը քարուքանդ էր արւած, և շինութեան հսկող ու մասնակցող Թիւրքերից շատերը

տրուած ։ Ժողովուրդի վճիռը կատարելու յանձնառութեամբ գործադրել էին Սասունի քաջերը ։

Մարտակոչը տրուած էր ։

Օգոստոսի մէկին Սասունը պաշարել էին օսմանցոց կանոնաւոր զօրքերի բազմաթիւ վաշտեր իրենց թնդանօթներով, այնտեղ էին Չէքի, Սալէհ և Մուսթաֆա փաշաներ, Զիլանցոց չէյխ Մահմուդը, որը անցել էր Ոլըդցի, Խարզանցի, Գառըդանցի, Խիանցի, Բադրանցի, Բէլըդցի, Զիլանցի, Ջալալցի, Հայտէրանցի և ուրիշ շատ քիւրտ հրոսակ ցեղերի տասնեակ հազարներոց բաշիբոզուկ հեծեալների գլխին ։

Երկու կողմից էլ սոսկալի պատրաստութիւններ էին տեսնում ։ Թշնամին աշխատում էր պաշարողական շղթան ըստ կարելւոյն սեղմել, իսկ Սասունցիք ամրանում էին Անտոքի, Ցրփրքարի և Կէփէի անառիկ բարձունքների մէջ ։ Ճակատամարտը անխուսափելի էր ։



Գիշեր էր ։

Լուսինը հորիզոնի Արևելեան ծայրից հեզիկ, նազիկ բարձրանալ սկսեց ։ Անտոք իր բոլոր գագաթները մերկացած հսկայինման, գլուխն ու թիկունքը, կուրծքն ու դէմքը լուսնակի լոյսի տակ, անհոգ ու համարձակ փայլփըլում էր ։ ապառաժ քարերը, հսկայակերպ ժայռերը ընկած բարձրագագաթ Անտոքի վրայ, ասես ճնշել են ուզում ահաւոր լեռը, իրենց անհանդուրժելի ծանրութեան տակ ։ Կաթնածոր երկինքը, արծաթազօծ լուսինը, ոսկեծիրն աստղունքը սքանչելի ներդաշնակութեամբ, եթերային պարզ ու անհուն բարձրութիւնից ակնապիշ ու անթարթ նայում են մեծամարմին Անտոքին, ասես անձեռագործ ու անծայր, անսիւն ու անյենարան, վրան լինի Անտոքի վրայ փռուած ։ Անտոքը կրծքին ծանր քարեր, շալ-

կած անտանելի ու բուռն վշտեր, գլխին ու կողքերին Թի-կունքի ու ոտների վրայ, լայն ու անդնդախոր ձորեր, ծմակներ ու հովիտներ, տասն դարերից իվեր ընկած, ան-բուժելի վէրքերով ու խոցերով տանջւող մի հսկայ լինի, որ տխուր ու մռունջ, լռիկ ու տրտում փռուել լուսնի ա-ռաջ եւ՝ նրանից, որպէս հարազատ քրոջից օգնութիւն է հայցում ողորմագին։

Անտոքի ոտերն ընկած, նրա բարձր ու անխորտակելի կարողութեան, իր բաղդը յանձնած Ալիանցիք գիւղը, նստած բազմաթիւ բլրակների գլխին, գեղեցիկ ծառաս-տանների մէջ, պաղօրակ եւ քչքչան աղբիւրակների մօտ, վաղկան ու ցայտուն առուակների հետ, մէկ աստղազարթ երկնքին էր նայում, մէկ Անտոքին ուղղում իր աղեր-սալի աչերը, ապա դէպի հարաւ դառնում, Ծովասարի զարդարան կրծքի պչրանքով, լուսնկայ գիշերւայ մեղմ լուսաւորութեան տակ կանանչ ու ծաղիկ տարածող սարի դեղանկար տեսքից հիանում։

Զքնաղ էր Ալիանցիքը, բաղդաւոր էին նրա բնակիչ հայերը։

Շքեղաշէն ծառաստանների մէջ, մէկը միւսից հեռու շինած էին իրենց բնակարանները Ալիանցիքի բոլոր գիւղա-ցիները։

Հեռու ծառաստաններում, մի մեծ բլուրի հարթ մա-կերեւոյթի վրայ շինուած էր Մուռ Աւօենց տունը։

Ալիանցիքի բոլոր հայերը ոտքի վրայ էին. գիւղը ար-տասովոր եւ անհնդային շարժման մէջ էր. մետաղների հնչիւնները տարածւում էին խաղաղ գիշերւայ մաքուր օդի մէջ և զիլ արձագանք գտնում հանդիպակաց լեռնա-խորշերում.

Պատերազմի պատրաստութիւն էին տեսնում։

Մուսա Աւօենց բակում մէկ կին ու չորս տղամարդիկ էին կանգնել։ Կինը Աւօենց մեծ հարսն էր, Հաւաէ անունով։

Հաւաէն Սասունցի հերոսուհիներից երկրորդն էր, առաջինը՝ Շաքէն էր։

Կէլիէկուզանի Ղզրօենց աղջիկն էր Հաւաէն։ Նա դեռ մանուկ հասակից աչքի էր ընկնում իր քաջութեամբ եւ ամէն վտանգ, ոյժ արհամարհող անվեհերութեամբ։ Ամէն առաւօտ նա կը հագնէր իր պարզ ու անպաճոյճ շորերը, հագնում էր կարմիր չիլայից կարած, մինչ ոտներ իջնող քղանցքաւոր զպուն, զպունի վրայից, գօտին կապում մի քանի տակ ոլորելով, ապա կապում էր ասեղնագործ սրտնոցը, նրա վրայից գունաւոր կտորից կարած, ոսկեթել երիզներով նախշած, թեւերը բաց սալթա, գլուխը ծածկում արծաթ թասակով, որի եզրերը զարդարուած էին պէս-պէս դրամներով, ոտներին հագնում երկարավիզ ու բարձրակրունկ կարմիր ջզմա, ծամթելերը կապում բազմաթիւ հիւսուածքներով ուսերին փռուած խուրձ վարսերից, նրանց վերջին ծայրերը զարդարում խոպոպիք-կոնծռիկներով, սարի ջէյրանը մէկ փայտ ձեռին դուրս կը գար տնից հօտաղների հետ ու գիշեր ցերեկ, սարերն ու քարեր, ձորերն ու դաշտերը, ծմակներն ու քօլերը ոտի տակ էր տալիս, խաղալով ու խայտալով, երգելով ու թռչկոտելով։ Ամէն անգամ երբ նստելուց բէցրող իր 'հարազատները կուռի, թալանի ու արշաւանքի կերթային, Հաւաէն անբաժան նրանցից, հարազատներից մէկի մօտ կանգնած օգնում էր։

Այսպէս էր անցել Ղզրօենց աղջիկ Հաւաէի մանկութեան օրերը։

Այժմ նա վաթսուն տարեկան կին էր, չորս կորիճ զաւակների մայր, խելացի, փորձառու և անվեհեր, իր ներկայութեամբ ամէնքին պատկառանք և խրախոյս ներշնչող։

Սովորական շորերը հագին, թեւերը հօլանի, ձիւնա-

փայլ ու մինչ կրունկները երկարող լաչան անհագօրէն փը-ռած գլխին ու ուսերին, լուսինի մեղմ լուսաւորութիւ-նից օգտուելով բաղբակի մէջ իր չորս որդիների հետ զբաղ-ուած էր զէնքերի պատրաստութեամբ, չէչխանները սըր-բում, մաքրում էին, գնդակ ու վառօդ լցնում ամա-ների մէջ, սրերի բերանները սրում, արծաթազօծ լու-սաւորութեան մէջ սրերը փայլում ու շողշողում էին նը-ման ոլորուն լեզուների։

Յուզուած էր Հաւաէն, լեռնուհին աւելի քան երբ և իցէ մտազբաղ էր երևում, նրա որդիքը բարձրահասակ ու յաղթանդամ, հնազանդ ռազմագէտ մօր հրամաններին լուռ ու մունջ գործում էին։

—Լաօնե՛ր, ասաց Հաւաէն իր որդիներին, տայէն ձեզ դուրպան, մեր հարազատները վճռեցին պատերազմել, մենք երդուեցինք կռուել, որովհետև է՛լ անտանելի են դարձել թշնամու արածները, որովհետև ամօթ է մեզ, մեր սուրբ լեռները փուլ կը գան և մեզ տակովը կանեն երբ մենք «Մընք քար կը հայցունք, ջուր դարձունք զէր-կաթ, ափսո՛ս չը՞նք մենք վատ տաճկինըրիաթ» երգենք և ապա այսքան զրկանքները համբերութեամբ տանինք, այս կռիւը խաղ չէ, քիւրտ ու տաճիկ, զօրք ու թնդա-նօթ բիւրներով են թափել, մեզ հետ է միայն, հեռա-ւոր երկրից եկած, սիրտը մեզ համար էրուած, կեանքը Սասունին մատաղ արած ՄՈՒՐԱՏԸ։ Ձեզ եմ ասում, զա-ւակներ, վա՛յ ձեզ եթէ քամակից վէրք ու գնդակ ըն-դունելով ընկնէք, այն ժամանակ ամէնից առաջ ես աչերս կը փակեմ ձեր դիակները չտեսնելու համար, ես իսպառ կը մոռանամ ձեր յիշատակը, կափսոսամ ձեզ սուածս կա-թը և անքուն անցկացրածս գիշերները։

Զաւակները խորին երկիւղածութեամբ լսում էին մօր խօսքերը։

—Դուք երկուսդ—Աւէ և Հաջօ, կը լինիք ինձ հետ իմ

խմբի մէջ. իսկ դուք կը գնաք Ռէս Գրքօյի հետ. այդ-պէս է վճռուած։ «Մեր սուրբ Մարաթէն, Անտոք, Ծովասար, կանչին—«Հարի՞ եմ մեռուկ մնաք դուք», մեզ են կանչում, մեզ են ասում մեռուկ, զաւակնե՛րս, գէ՛ Ս. Մարաթէն ձեզ օգնական էղնի, ցոյց տանք որ մենք մեռուկ չենք, դուք էլ ցոյց տուէք որ Հաւսէի հարազատներն էք։

Բազուկ աստղախումբը երկնից ամենաբարձր կէտին էր հասել և այնտեղ պայծառ պէծին-պէծին պսպղում էր երբ Հաւսէն ամէնից մեծ ու փոքր որդիներ, Աւէն ու Հաջօն հետն առած, Նիզակը ձեռին, սուրը կողքին դուրս եկաւ Ալիանցիքի ծառաստաններից ու անյայտացաւ լերան ստորոտի թաւուտներում։

Առաւօտեան վաղը սկսեց Ձայի ահեղ ճակատամարտը, հրացանների բո՛ւմ-բո՛ւմ որոտումները, գնդակների սուր վզզոցը, սրերի շողիւնը, շէշխանաների շախմախների չխչխկոցը, ձիերի խրխինջը, կռւողների կատաղի գոռում գոչիւնները, չտեսնուած թափով աղմկում էին Սասնոյ լեռներում ծրարուած չայը ու իր շրջակայքը։ Վառօդահոտը բուրում էր ամէնուրեք, ծուխը մշուշանման բռնել էր արևի դէմը ու քօղել նրա պայծառ երեսը։ Լօ՛, լօ՛, լօ՛ գոռ հնչիւններով միմեանց յայտնում էին պատերազմողները։

Հայերի ամենավտանգաւոր դիրքերից մէկում, մէկ ժայռի ետև կանգնած էր մի բարձրահասակ կին, դէմքը արևավառ, աչքերը զայրացկոտ, կեռ սուրը կողքին և սրածայր Նիզակ ձեռքին։ Ամէն անգամ երբ իր շրջապատում դարան մտած քաջերից մէկի գնդակը նպատակին հասնելով մէկ թշնամու էր գլորում, նա անհուն բերկրութեամբ կանչում էր —Լաօ՛, լաօ՛, մամօն քեզ ղուրբան, ձեռներդ զօրանան։

Հաւսէն էր նա. իր երկու որդիների հետ պաշտպանում էր մի շատ կարեւոր անցք, թշնամու ճակատին նայող

և նրանից անմիջական վտանգ ստացող դիրքը տւել էր Հաջօին, իսկ ինքը սպասում էր ձեռնամարտին, որը ըստ երևոյթին շուտով պիտի սկսւէր։

Ցանկարծ հրացանների որոտմունքը աւելի ուժեղացաւ, և՝ ձիաւորների մի մեծ խումբ սրարշաւ քշեց դէպի Հաջօի դիրքը։ Հաջօն տեսնելով որ իր դիրքից շատ դժւար է պաշտպանել փորսող տալով յետ նահանջեց, աւելի լաւ դիրքից կռւելու համար, Հաւսէն նկատեց այս և թշնամու մերձենալը, զայրացած կանչեց.—Հաջօ՛, Հաջօ՛, կռկօն (1) քաշեմ զքօ գլուխ, հարի՞ ես կանգնել լաօ՛, էրի չաշուր է (սրի կռիւ), սուրը քաշեց Հաւսէն առաջ սլացաւ, նրան հետևեցին զարանած մարտիկները երգելով.—«Շրր (2) մրր առջևւէն փախնի քընց կատու, ափսո՛ս չընք մնանք տաճկին հարկատու»։ Հազարաւորները իրար էին խառնըւած, հրացանների որոտը էլ հատ հատ էր լսւում, սրերն էին շառաչում, իջնում ու ելնում, հարւածում ու հարւած ընդունում, իւրաքանչիւր բարձրացող փայլուն սուրը արիւնով կարմրում էր, ծայրից արի՛ւն էր կաթում։ Կենդանիները անցնում կոխտում էին դիակների վրայից։ Կիսամեռներ ու վիրաւորները մռնչում, հառաչում ու տքում էին։ Արի՛ւն էր հոսում. արիւնի մէջ էին շաղախւել, արիւնոտ էր բոլորի ոտները։

Հաւսէն քօֆին ու լաչակը փռած ուսերին, թևքերը հոլանի կռւում էր սուրը խաղացնելով, ձիաւոր քրդերի մի փոքրիկ խումբ շրջապատեց նրան. առիւծը սրի մի հարւածով վայր բերեց նրանցից մէկին, րոպէապէս թռաւ ձիան վրայ, ասպանդակեց ուժեղ նժոյգին, մի քանի պտոյտներ գործեց, սուրը շողշողացնելով սլացաւ։

Թշնամին փախել էր։ Հարիւրաւոր դիակներով ծածկըւել էր դաշտը։

Մէկ կին միայն, վերջին անգամ, նիզակի ծայրից մէկ շոր, ասեղնակար և ծոպքաւոր, դրօշականման կախ տը-

---

(1) Սեւ վրան։ (2) Առիւծ։

ւած, նժոյգ նստած թռչում էր դաշտի միջով և գնում դէպի Անտոքը։ Դրօշակակիրը Հաւսէն էր։

***

Անտոքը պաշարուած էր․ Թշնամին իր տասնեակ հազարներով բանակով սեղմել էր Սասունցոց, որոնք տասնեակ օրերով դիմադրել էին քանակով ահեղ Թշնամուն։

Մինչ օգոստոսի 16-ը Թշնամու բոլոր յարձակումները յետ էին մղուած. կանոնաւոր զօրքերի և բաշիբօզուկ կատաղիների կրած պարտութիւնները խայտառակ էին։ Նրանք մինչեւ այդ օր ո՛չ մէկ կարեւոր դիրք և ամրութիւն գրաւել չէին կարողացել, իրենց զոհերի թիւը մէկ քանի հազարի էր հասել։ Կռուի մէջ էլ խարդախ եւ ասպետական ոգուց զուրկ օսմանցին, վրէժը լուծում էր անմարդաբնակ եւ անպաշտպան գիւղերն այրելով ու քարուքանդ անելով։

Բանակի մէջ, վերջին օրեր, տիրապետել էր ամենածայրայեղ յուսահատութիւն, ո՛չ մի գունդ յօժարակամ կռուի չէր գնում, քիւրտերը վհատած հայհոյում էին կեղտոտ ռօմին, որ իրենց խաբել եւ բերել կոտորել էր տալիս Սասունի լեռներում․ շատերը արդէն փախչում էին։ Զօրքերը ըմբոստանում էին․ Թւում էր որ նրանք իրենց զէնքերը իրենց հրամանատարների դէմ պիտի դարձնեն։ Դժուար կացութեան մէջ էին փաշաներն ու զօրապետները, չէյխերն ու ցեղապետները․ Նրանք համոզուել էին որ կռուով Սասունը յաղթել չեն կարող․ ուստի դիմեցին ամենազզրելի խաբեբայութեան։

Մինչ օսմանցու նենգամտութիւնը յաջողել էր իր պատուիրակների սուտ խոստումներով, հաշտութեան նենգ խօսքերով, Անտոքից իրենց բանակ բերել Սասունի նշանաւորներից եւ ռազմիկներից շատերին և՛ սկսել հրեղէն

կարկուտ թափել նրանց վրայ ու արախողխող անել նրանց. Անտոքի տակ, բանակից քիչ հեռու, կայրէ չարաֆխանում սկսուեց մի գոռ ճակատամարտ։

Նորից Սասունը թնդաց, Անտոքի բարձունքներից հրացանները որոտացին, հազարաւոր բերաններ մահ կանչեցին, թշնամու անհնարին նենգաւորութիւնից զայրացած լերան զաւակները։

—Մատաղ էղնի ձեզ Հաւսէն զարկէ՛ք սարի լաճեր, գոռում էր հերարձակ Հաւսէն։ Մարդիկ երկու կողմից, աշնան տերեւների պէս վայր էին թափւում։

—Հաջօ, ջան բալա, մամօն քեզ մեռնի զա՛րկ անհաւատներին:

—Մամօ, թւանքս աւրաւ, էմլա՞ կեղնի, կանչեց սրտամաշ Հաջօն։

—Եա սուրբ Մարաթա, գոռաց Հաւսէն, սուրը քաշեց ու վազեց, Հաջօն մօր օրինակին հետեւեց։ Դարձեալ ճակատամարտ սկսուեց։

***

Երոխտ Սասունը պարտուած էր։

Շէն Սասունի բոլոր գիւղերը այրւում էին, քարուքանդ փլատակներից ծուխը պալան-պալան բարձրանում էր, ամէն կողմից կծու խանձահոտ էր փչում, չորացած արիւնի հոտը. հոտած և անթաղդիակներից տարածուող գարշահոտութիւնը բուրում էր Սասունի կուսական լեռներից եւ անարատ ձորերից։ Իւրաքանչիւր քարի տակ ամէն մի քօլի մօտ. ծմակներում, փոսերում, աղբիւրների ակունքին, առուների եզրին ընկած էին յօշ-յօշ եղած դիակներ։ Մարդկանց տեղ գէլ ու գազաններ էին թափառում ու ոռնում անդադար. լէշակեր թռչուններ էին սուր ճիչեր արձակում։